ازدیاد Էզտիյատ [ա] Աւելնալ, առ-
ճիլ [زیاده էն] ։

آزر Ազըր [ի] Քիչ քիչ ։

ازرار Էզրար* [ա] Կոճկունք, կո-
ճակք [Էզ. زر] ։

آزردكی Ազուրտէկի [պ] Վշտա-
ցում ։

آزرده Ազուրտէ [պ] Վշտացեալ,
խռովեալ ։

ازرق Էզրագ [ա] Կապոյտ, կա-
պուտակ [زرق էն] ։

ازرقیت Էզրագըյյէթ* [ա] Կապու-
տակութիւն ։

آزرم Ազէրմ [պ] Պատկառանք,
ծանրութիւն ։

ازسرنو Էզ-սէրի նէվ [պ] Նորէն,
վերստին ։

آزرجو Ազէրմճու [պ] Ամչկոտ ։

آزشدرمق Ազըշտըրմագ [թ] Իրարու
դէմ գրգռել ։

آزشمق Ազըշմագ [թ] Իրարու դէմ
սրտմտիլ ։

ازعاج Էզ'աճ [ա] Նեղել ։

آزغین Ազղըն [թ] Մոլորեալ, կա-
տաղի ։

آزغینلشمق Ազղընլաշմագ [թ] Կա-
տաղիլ, զայրանալ ։

آزق Ազըգ [թ] Սնունդ ։

ازقه Էզզըգա* [ա] Փողոցներ [Էզ. زقاق] ։

ازكا Էզքիա [ա] Արդարոյն [زكی է] ։

ازكی Էզկի [ի] Եղանակ ։

ازكیاء Էզքիյա* [ա] Սուրբք,
բարեպաշտք [Էզ. زكی] ։

ازل Էզէլ [ա] Անսկիզբ ժամա-
նակ, յաւիտեան [ձ. آزال] ։

آزلق Ազլըգ [թ] 1. Նուազու-
թիւն 2. Քիչուոր ։

ازلمك Էզիլմէք [թ] 1. Ճզմուիլ
2. Նազ ընել ։

ازلی Էզէլի
ازلیه Էզէլիյյէ* [ա] Յաւիտե-
նական ։

ازلیت Էզէլիյյէթ* [ա] Յաւիտե-
նականութիւն ։

آزما Ազմա [պ] Փորձ, փորձ ։

آزمان Ազման [ի] Անհեթեթ իր
սեռին մէջ. ճիւաղ ։

ازمان Էզման* [ա] Ժամանակներ
[Էզ. زمن . زمان] ։

آزمایش Ազմայիշ [պ] Փորձառու-
թիւն ։ ی — փորձառու ։

آزمسامق Ազըմսամագ [թ] Քիչ
համարել ։

آزمق Ազմագ [թ] 1. Մոլորիլ 2.
Կատղիլ 3. Չափազանց ա-
ճիլ ։ դոշ — . Երազա-
խափ լինել ։

ازمك Էզմէք [թ] Ճզմել ։

ازمنه Էզմինէ* [ա] Ժամանակ-
ներ [Էզ. زمان. زمن] ։

آزمودكی Ազմուտէկի [պ] Փորձա-
ռութիւն ։

آزموده Ազմուտէ [պ] Փորձած,
փորձուած ։

آزمه Ազմա [ի] Մերձաւոր սեռէ
արու և էգէ սերած կենդա-
նի ։

ازمه Էզմէ [ի] Ճմլուած նիւթ ։

ازمه Էզիմմէ* [ա] Սանձեր . [Էզ .
زمام] ։

ازنق Էզինիք [ի] Նուազում ։

ازنمك Էզինմէք [ի] Նուազիլ ։

آزو ազու [թ] 1. Աղօրիք. (ակռայ). 2. Ժանիք :

ازواج եզվաճ* [ա] 1. Ամուսինք [եզ. زوج] 2. Կողակիցք :

ازهار եզհար* [ա] 1. Ծաղիկներ [եզ. زهر] 2. էզհար Ծաղկակարգութիւն. [زهر էն] :

ازهر եզհեր [ա] Պայծառագոյն :

ان — Արև և Լուսին :

ازيد եզյետ [ա] Առաւելագոյն. շատ աւելի [زائد էն] :

ازيك եզիք [թ] 1. Ճմլուած. 2. Վարանող :

آژدر աժտեր } [պ] Վիշապ :
آژدرها աժտերհա }

اس էսս [ա] 1. Հիմ. 2. Իսս. Յայտարար Թիւ :

آس աս [պ] Մրտենի :

آسا ասա [պ] Նման. պէս :

اساث էսասս* [ա] Զարդագործութիւն. [سوء էն] :

اسابيع էսապի՛ * [ա] Շաբաթներ. [եզ. اسبوع] :

آساة ասաթ* [ա] 1. Բժիշկներ. [եզ. آسى] 2. Նորագէտք .

اساتذه էսաթիզէ* } [ա] Վարպետք . ուսուցիչք. [եզ. استاذ] :
اساتيذ էսաթիզ* }

آساد ասատ* [ա] Առիւծք . [եզ. اسد] :

اسارت էսարեթ* [ա] Գերութիւն :

اساره էսարէ* [ա] Ղրկել . [سير էն] :

اسارى էսարա* [ա] Գերիներ :

اساس էսաս [ա] 1. Հիմ [յգ. اسس] Սկզբունք :

اساساً էսասէն [ա] 1. Իհիմանէ, հիմնապէս 2. Սկզբամբ :

اساسى էսասի } [ա] Հիմնական.
اساسيه էսասիյէ* } قانون اساسى .գանունը էսասի. սահմանադրութիւն ,

اساطير էսաթիր* [ա] Առասպելք. [եզ. اسطوره]

اساطين էսաթին* [ա] 1. Սիւներ. [եզ. اسطوانه] 2. Գլխաւորներ :

اساغه էսաղա* [ա] Դիւրաւ կլնել :

اسافل էսաֆիլ* [ա] Ամենաստորինք. գռեհիկք. [եզ. اسفل] :

اساقه էսագա* [ա] Մղել. տանիլ. [سوق էն] :

اسئله էս՛իլէ* [ա] Հարցումներ . [եզ. سؤال] :

اساله էսալէ* [ա] Հոսեցնել . պարպել. թափել [سيلان էն] :

اساليب էսալիպ* [ա] Եղանակներ. մեթոտներ. ձևեր. [եզ. اسلوب] :

اسامه էսամէ 1. Անուն, անուններ [ասլ. اسامى էն] 2. Արձանագրութիւն .

اسامى էսամի* [ա] Անուններ. [եզ. اسم] :

آسان ասան [պ] Դիւրին :

اسانيد էսանիտ* [ա] Աւանդութիւնք. [եզ اسناد] :

آسايش ասայիշ [պ] Հանգստութիւն. խաղաղութիւն.

آسايشپرور ասայիշփերվեր } [պ] Խաղաղասէր.
آسايشجو ասայիշճու }
[յգ. ان — . يان —] انه — խաղաղասիրական :

اسب էսպ [պ] Ձի. [յգ. اسبان] :

اسباب էսպապ* [ա] 1. Պատճառներ. [եզ. سبب] 2. Միջոցներ. 3. Կազմածք :

اسباط էսպաթ* [ա] Ցեղեր. [եզ. سبط] :

اسبال իսպալ [ա] Ուղարկել. ճամբայ հանել. [سبیل էն]։

اسبان իսպան [պ] Ձիեր։

اسبران իսպըրան [պ] Ձիով ընթացող։

اسبسوار իսպէսուվար [պ] Ձի հեծած։

اسبق էսպագ [ա] Նախկին [سابق էն]

اسبوع իսպուա' [ա] Շաբաթ. եօթնեակ. [اسابیع ըջ]։

اسبوعیه իսպուա'իյյէ* [ա] Շաբաթական։

اسپازموس ըսփազմօս [յուն.] Ջղաձգութիւն։

اسپاناك ըսփանագ [պ] Շոմին։

اسپانیا ըսփանիա [իտա.] Սպանիա։

اسپانیول ըսփանիօլ [գաղ.] Սպանիացի. Սպանիական. جه — սպաներէն։

اسپتالیه ըսփիթալիա [լատ.] Հիւանդանոց։

اسپرتو իսփիրթօ [իտա.] Ոգի գինւոյ։

آسپریس ասփիրիս [պ] Ասպարէզ։

اسپچیار ըսփէնճեար [իտա] Դեղագործ։

اسپیر իսփիր [իտա] Սպասաւոր ձիու։

استا ուսթա [պ] Վարպետ։

استاستیق ըսթաթիսթիգ [է] Վիճակագրութիւն։

استاد ուսթադ [պ] Վարպետ [ըջ. استادان]։

استاده իսթադէ [պ] Ոտքի կեցած։

استاذ ուսթազ [ա] տե՛ս استاد։

استار իսթար* [ա] 1. Ծածկոցք [եզ. ستر] 2. Աստառ [ադա-. ասխմառ]։

استارلامق աստարլամագ [թ] Աստառով պատել։

استاسیون ըսթասիօն [է] Կայարան։

استاقوس ըսթագօս [յուն] Աստակոս։

استالیا իսթալիա [իտա] Կայք նաւու։

آستان ասթան [պ] Սեմ։

استانبول իսթանպօլ Կ. Պոլիս [աղաւ. յունական իսթինպօլին աղաւաղուածէն]։ آغاسی — Հին ժամանակի պոլսոյ հրամանատար։

آستانه ասթանէ [պ] Սեմ։ ա-ոսց. عليه ‹ — Կ. Պոլիս. لی — պոլսեցի։

استاوروس ըսթավրօս [յուն.] Խաչ։

استباق իսթիպագ [ա] Մրցում [سبقت էն]։

استبداد իսթիպտատ [ա] Ինքնիշխանութիւն, բռնակալութիւն։ کارانه — բռնապետական։

استبدال իսթիպտալ [ա] Փոխանակել [بدل էն]։ افرادی .ոսց. — ժամանակին լրանալով արձակեալ զինուորք։

استبراء իսթիպրա [ա] Մաքրուիլ, անմաքրութենէ զերծանիլ [برائت էն]։

استبشار իսթիպշար [ա] Աւետիս ընդունիլ կամ առնուլ [بشارت է]։

استبعاد իսթիպ'ատ [ա] Հեռի կամ անհաւանական համարել [بعید էն]։

استبقاء իսթիպգա [ա] Յարատեւումը խնդրել [بقا էն]։

استتابه իսթիթապէ*. [ա] Զղջալ [توبه էն]։

استتار իսթիթար [ա] Ծածկուիլ [ستر էն]։

استتمام իսթիթմամ [ա] Լրացումը խնդրել, լրացնել [تمام էն]։

استثقال իսթիսգալ [ա] Ծանր համարել. խորշիլ, մէկու մը դէմ հակակրիլ [ثقلت . ثقيل էն]։

استثناء իսթիսնա [ա] Բացառութիւն։ ئى — يه — բացառաբար։

استج իսթիճ [թ] Վիրաբուժական գործիքի մը անուն։

استجابت իսթիճապէթ* [ա] Պատասխանել, ընդունիլ [جواب էն]։

استجرار իսթիճրար [ա] Քաշել [جر էն]։

استجلاب իսթիճլապ [ա] Գրաւել, ձգել առ ինքն [جلب էն]։

استجماع իսթիճմա' [ա] Համախմբել [جمع էն]։

استجواب իսթիճվապ [ա] 1. Հարցաքննել, պատասխան ուզել [جواب էն] 2. Հարցաքննութիւն [ﺝ . استجوابات]։

استحاله իսթիհալէ* [ա] 1. Անկարելիութիւն 2. Կերպարանափոխութիւն [حال էն]։

استحباب իսթիհպապ [ա] Բարեկամ ընել [حبيب էն]։

استحسان իսթիհսան [ա] Հաւնիլ [حسن էն]։

استحصال իսթիհսալ [ա] Ձեռք բերել [حصول էն]։

استحصان իսթիհսան [ա] Ամրանալ [حصن էն]։

استحضار իսթիհզար [ա] 1. Պատրաստել, ներկայել [حضور էն] 2. Բժշ. Կազմութիւն (դեղօրէից)։ — دار ال աշխատանոց։

استحضارات իսթիհզարաթ* [ա] Պատրաստ դեղօրայք։

استحفاظ իսթիհֆազ [ա] 1. Պահել [حفظ էն] 2. Սերտել։

استحقار իսթիհգար [ա] Արհամարհել [حقارت էն]։

استحقاق իսթիհգագ [ա] Արժանաւորութիւն, իրաւունք [حق էն] [ﺝ . استحقاقات]։

استحكام իսթիհքեամ [ա] 1. Ամրացնել [حكم էն] 2. Ամրութիւն [ﺝ . استحكامات]։

استحلاب իսթիհլապ [ա] Կթել։ — قابل կթելի։

استحلاف իսթիհլաֆ [ա] Երդումով պահանջել։

استحلال իսթիհլալ [ա] Արդարացի, օրինաւոր համարել [حلال էն]։

استحمام իսթիհմամ [ա] Լոգանք առնել [حام էն]։

استحياء իսթիհիա [ա] 1. Ամչնալ [حيا էն] 2. Կենդանացում [حيات էն]։

استخاره իսթիխարէ* [ա] Երազագիւթութիւն [خير էն]։

استخبار իսթիխպար [ա] 1. Լուր առնել, իմանալ [خبر էն] 2. Տեղեկութիւն [ﺝ . استخبارات]։

استخدام իսթիխտամ [ա] Ծառայեցնել, ծառայութեան առնել, գործածել [خدمت էն] — اولنق ծառայել։

استخراج իսթիխրաճ [ա] Ա. դուրս հանել. հանել [خروج էն] Բ. Գուշակութիւն [յգ. استخراجات]։

استخفاف իսթիխֆաֆ [ա] Չնչին համարել [خفيف էն]։

استخلاص իսթիխլաս [ա] Ազատել [خلاص էն]։

استخلاف իսթիխլաֆ [ա] Յաջորդ կամ փոխանորդ կարգել [خلف է]

استخوان իսթուխան [պ] Ոսկր։

استداره իսթիտարէ* [ա] Կլորանալ, կլորնալ [دور էն]։

استداری իսթիտարի [ա] Շարժում մը ոլորական։

استدامه իսթիտամէ* [ա] Շարունակութ. մնալ խնդրել. յարատեւութիւն [دوام էն]։

استدانه իսթիտանէ* [ա] Փոխ առնել (դրամ) [دين էն]։

استدراج իսթիտրաճ [ա] Ա. Տակաւ առ տակաւ բարձրացում [درجه էն] Բ. Բաղդ [—ղաա. իսթիրաճ]։

استدراك իսթիտրաք [ա] Իմանալ, հասկնալ, հասնիլ [درك էն]։

استدعاء իսթիտ'ա [ա] Ա. Արդարութեան հատուցում պահանջել [دعوى էն] Բ. Խնդրել Գ. Խնդիր [յգ. مستدعيات]։ Դ. Խնդրագիր نامه — խնդրագիր։

استدلال իսթիտլալ [ա] Ա. Հետեւցնել [دلالت էն] Բ. Մակաբերել, մակաբերութիւն [յգ. استدلالات]։

استدماء իսթիտմա [ա] Բժշ. Արիւնահոսութիւն [دم էն]։

استذكار իսթիզքեար [ա] Մտաբերել [ذكر էն]։

استذلال իսթիզլալ [ա] Հեք եւ նուաստ համարել [ذلت . ذليل է]։

استر իսթէր [պ] Ջորի [յգ. استران]։

استراحت իսթիրահաթ* [ա] Հանգստանալ, հանգիստ [راحت է]։

استراق իսթիրաք [ա] Գողնալ [سرقت էն]։

استرجاء իսթիրճա [ա] Աղաչել, խնդրել [رجا էն]։

استرحام իսթիրհամ [ա] Ա. Պաղատիլ, գթութիւն հայցել [رحمت էն] Բ. Աղերս, աղաչանք [յգ. استرحامات]։ ـه — աղերսական։

استرحامنامه իսթիրհամնամէ [պ] Աղաչանաց գիր։

استرخاء իսթիրխա [ա] Կակղութիւն [رخاوت էն]։

استرداد իսթիրտատ [ա] Ետ առնել [رد էն]։

استرذال իսթիրզալ [ա] Խայտառակ համարել [رذالت էն]։

استرزاق իսթիրզաք [ա] Ուտեստ ճարել [رزق էն]։

استرشاء իսթիրշա [ա] Կաշառք առնել [رشوت էն]։

استرشاد իսթիրշատ [ա] Ուղիղ ճանապարհ խնդրել [رشد էն]։

استرقاب իսթիրքապ [ա] Մրցութիւն, նախանձորդութիւն [յգ. ات —]։

استرقاق իսթիրքաք [ա] Ա. Գերի ընել [رق ռուգգ էն]։

استرويا իսթրօֆա [գաղ] Բիր։

استره ուսթուրա [գ] Ածելի ,

استرهان իսթիրհան [ա] Գրաւ ուզել կամ առնել [رهن էն] ։

استريديا ըսթիրիտիա [յուն.] Ոստրէ ։

استزاده իսթիզատէ* [ա] Աւելնալը խնդրել [زياده էն] ։

استسعاد իսթիսաատ [ա] Երջանիկ համարել, երջանկանալ [سعيد . سعادت էն] ։

استسقاء իսթիսգա [ա] 1. Ըմպելիք խնդրել [سقايت էն] 2. Բժշ. Ջրգողութիւն [ողա. սրսգա] ։

استسلام իսթիսլամ [ա] Մահմետական ըլլալ [اسلام էն] ։

استسناد իսթիսնատ [ա] Յենուլ [سند էն] ։

استسهال իսթիսհալ [ա] Դիւրին համարել [سهل էն] ։

استشاره իսթիշարէ* [ա] Խորհուրդ հարցնել, խորհրդակցիլ [شورى էն] ։

استشعار իսթիշ'ար [ա] 1. Տեղեկութիւն ունել 2. Հարց [ջմ. ات —] ։

استشفاء իսթիշֆա [ա] Բժշկութիւն խնդրել [شفا էն] ։

استشفاع իսթիշֆա' [ա] Բարեխօսութիւն խնդրել [شفاعت էն] ։

استشمام իսթիշմամ [ա] 1. Հոտոտել [شم էն] 2. Զգալ, կըռահել ։

استشهاد իսթիշհատ [ա] Վկայութիւն բերել, առնել, ունել [شهادت էն] ։

استشهار իսթիշհար [ա] Հռչակիլ [شهرت էն] ։

استصحاب իսթիսհապ [ա] 1. Պաշտպանել [صحابت էն] 2. Մէկտեղ առնել 3. Ստացում ։ أ — — بال միասնեղ առնելով ։

استصعاب իսթիս'ապ [ա] Դժուար համարել [صعوبت էն] ։

استصغار իսթիսղար [ա] Փոքր համարել [صغير էն] ,

استصناع իսթիսնա' [ա] Ճինելը ունել, շինել տալ [صنعت է] ։

استصواب իսթիսվապ [ա] Ուղիղ գտնել, հաւնիլ [صواب էն] ։

استضاءه իսթիզաէ* [ա] Լոյս առնել [ضياء էն] ։

استضعاف իսթիզ'աֆ [ա] Տկար, անզօր համարել [ضعف էն] ։

استطابه իսթիթապէ* [ա] Լաւ համարել [طيب էն] ։

استطاره իսթիթարէ* [ա] Թռցընել [طيران էն] ։

استطاعت իսթիթա'աթ* [ա] Կարողութիւն ։

استطاعه իսթիթա'ա* [ա] Կարողութիւն [طوع էն]։ من غیر . ـــــ — առանց կարողութեան. — على قدر ال — ըստ կարողութեան, ըստ կարի ։

استطاله իսթիթալէ* [ա] Երկարիլը խնդրել, երկարել [طول էն] ։

استطراد իսթիթրատ [ա] 1. Խոտորում [طرد էն] 2. Միջանկեալ խօսք [ջմ. ات —]։ على طريق — ال — միջանկեալ ըլլալով ։

استطلاع իսթիթլա' [ա] 1. Վերահասու ըլլալ, տեղեկանալ

[طلوع էն] 2. Տեղեկութիւն [յգ. استطلاعات]:

استظلال իսթիզլալ [ա] 1. Պաշտպանութիւն խնդրել [ظل էն] 2. Հովանաւորիլ:

استظهار իսթիզհար [ա] 1. Պաշտպանութիւն խնդրել, [ظهر էն] 2. Յենուլ:

استعاده իսթի'ատէ* [ա] 1. Վերադարձը ուզել [عودت էն] 2. Սովորիլ [عادت էն]:

استعاذه իսթի'ազէ* [ա] 1. Ապաստանիլ, դիմել [عياذ էն] 2. اعوذبالله ըսել:

استعارات իսթի'արաթ* [ա] Այլաբանութիւնք, փոխաբերութիւնք:

استعاره իսթի'արէ* [ա] 1. Փոխ առնել [առ ի գործածութիւն] [عاریت էն] 2. Այլաբանութիւն, փոխաբերութիւն:

استعاضه իսթի'ազէ* [ա] Փոխարինութիւն ուզել [عوض էն]:

استعانه իսթի'անէ* [ա] Օգնութիւն խնդրել [عون էն]:

استعبار իսթի'պար [ա] Օրինակ, խրատ առնել [عبرت էն]:

استعجاب իսթի'ճապ [ա] Զարմանալ [عجب էն]:

استعجال իսթի'ճալ [ա] Փութալ. աճապարել. փութով ուզել. [عجله էն]:

استعداد իսթի'տատ [ա] Ընդունակութիւն. բնական տրամադրութիւն. [عده 'ատտէ էն]:

استعذار իսթի'զար [ա] Թողութիւն խնդրել. [عذر էն]:

استعطاف իսթի'թաֆ [ա] 1. Կարեկցութիւն հայցել. շնորհ խնդրել. [عاطفت էն] 2. Հայցել. 3. Կարեկցութիւն.

استعظام իսթի'զամ [ա] Մեծցնել. ինքզինքը մեծացուցանել. [عظمت էն]:

استعفاء իսթի'ֆա [ա] 1. Ներողութիւն խնդրել. [عفو էն] 2. Հրաժարիլ. Հրաժարական نامه — Հրաժարագիր:

استعفاف իսթի'ֆաֆ [ա] Անբասիր ըլլալ [عفت էն]:

استعلاء իսթի'լա [ա] 1. Վերանալ [علو էն] 2. Տիրել, յաղթահարել:

استعلام իսթի'լամ [ա] 1, Տեղեկութիւն ուզել [علم էն] 2. Հարց [յգ. ات —]:

استعمار իսթի'մար [ա] Շէնցընել. գաղթականութիւն հաստատել [عمارت էն]:

استعمال իսթի'մալ [ա] 1. Գործածել. [عمل էն] 2. Գործածութիւն. [յգ. استعمالات] سوء — զեղծում:

استغاثه իսթիղասէ* [ա] Օգնութիւն հայցել:

استغداء իսթիղտա [ա] Սնանիլ. [غدا էն]:

استغراب իսթիղրապ [ա] Զարմանալ. [غربت . غريب էն]:

استغراق իսթիղրաք [ա] 1. Ընկղմել. սուզանիլ. [غرق էն] 2. Հիացումն (մտաց).

استغفار իսթիղֆար [ա] 1. Մեղաց

թողութիւն խնդրել. [غفران էն] 2. استغفر الله ըսել:

استغفر الله իսթաղֆիրուլլահ [ա] 1. Աստուծմէ ներում կը խնդրեմ. 2. Քաւ լիցի. բնաւ:

استغلال իսթիղլալ [ա] Ան շարժ ստացուածքը գրաւ դնել. [ռամ. իսթիլլալ].

استغناء իսթիղնա [ա] 1. Անկարօտութիւն [غنا էն] 2. Զկամութիւն ցոյց տալ:

استغنام իսթիղնամ [ա] Յափշտակել, յաւար առնել. [غنيت էն]:

استفاده իսթիֆադէ* [ա] 1. Օգուտ քաղել. [فائده էն] 2. Շահ, շահախնդրութիւն. ակնկալութիւն. 3. Հասկնալ, իմանալ:

استفاضه իսթիֆազէ* [ա] Զարդանալ, շնորհ խնդրել. [فيض էն]:

استفتاء իսթիֆթա [ա] Ֆէթվա հարցնել. [فتوى էն]:

استفتاح իսթիֆթահ [ա] 1. Բանալ. [فتح էն] 2. Արպակաւորի մը օրուան առաջին վաճառքը. [ռամ. սիֆթահ]:

استفراد իսթիֆրատ [ա] Մեկուսանալ. [فرد էն]:

استفراغ իսթիֆրաղ [ա] Փսխել. [فراغ էն] [ռամ. իսթիֆրա]:

استفسار իսթիֆսար [ա] 1. Հարցնել. 2. Հարցում. [յգ. ات —]:

استفهام իսթիֆհամ [ա] 1. Հարցնել. [فهم էն] 2. Իմանալ, հասկնալ:

استقامت իսթիքամէթ* [ա] 1. Ուղղութիւն. [قوام էն] 2. Պարկեշտութիւն:

احتقباح իսթիքպահ [ա] Անվայել համարել. [قبيح . قباحت էն]:

استقبال իսթիքպալ [ա] 1. Դիմաւորել. [قبل էն] 2. Ապառնի. 3. Ապագայ. يه — ապագայի վերաբերեալ:

استقبالاً իսթիքպալէն [ա] Ապագային:

استقدام իսթիքտամ [ա] 1. Զանալ. [قدم էն] 2. Իսա. Յառաջատուութիւն:

استقراء իսթիքրա [ա] Փնտռել:

استقرار իսթիքրար [ա] 1. Հաստատութիւնը՝ շարունակութիւնը ուզել, [قرار էն]. 2. Հաստատուիլ:

استقراض իսթիքրազ [ա] Փոխ առնել [قرض էն] 2. Փոխառութիւն [յգ. استقراضات]:

استقصاء իսթիքսա [ա] 1. Խուզարկել. 2. Հետազօտութիւն. — ارباب հետազօտողներ:

استقطاب իսթիքթապ [ա] Բեւեռացում. [قطب էն]:

استقطار իսթիքթար [ա] Թորել. [قطره էն]:

استقلال իսթիքլալ } [ա] Անկախութիւն:
استقلاليت իսթիքլալիյէթ* }

استقناد իսթիքնատ [ա] Շաքարացում. [قند էն]:

استك իսթէք [թ] տ. ايستك:

استکانت իսթիքանէթ* [ա] Խոնարհութիւն. [مسکنت էն]:

استكبار իսթիքպար [ա] Հպարտա-նալ. [كبر էն] :

استكتاب իսթիքթապ [ա] Զրուցա-գրութիւն. [كتب էն] :

استكثار իսթիքսար [ա] 1. Շատ համարել. [كثرت . كثير էն] 2. Շատցնել :

استكراء իսթիքրա [ա] Վարձու բռնել, վարձել. [كرا էն] :

استكراه իսթիքրահ [ա] Զզուիլ. [كراهت էն] :

استكساب իսթիքսապ [ա] Ստանալ, շահիլ. [كسب էն] :

استكشاف իսթիքշաֆ [ա] 1. Երեւան հանել, խուզել. [كشف էն] 2. յգն. Զննութիւն. [յգ. ات —] :

استكمال իսթիքմալ [ա] Լրացնել, կատարելագործել. [كال էն] 2. Կատարելագործութիւն [յգ. استكمالات] :

استكناه իսթիքնահ [ա] Խորը թա-փանցել, տեղեկանալ, զննել [كنه քիւնհ էն] :

استلاب իսթիլապ [ա] Կապտել. [سلب էն] :

استلذاذ իսթիլզազ [ա] Ախորժիլ. [لذت لذيذ էն] :

استلزام իսթիլզամ [ա] Տրամադրել, պատճառել, պահանջել. [لزوم էն] :

استلقاء իսթիլքա [ա] Բժշ. Յորսայ-ռութիւն :

استماع իսթիմա՛ [ա] Լսել՝ միտ դնել, ունկնդրել [سمع էն] :

استمالت իսթիմալէթ* [ա] Յանկու-ցանել [ميل էն] :

استمبوط ըսթիմպօթ [անգ.] Շոգե-մակոյկ :

استمتاع իսթիմթա՛ [ա] Օգուտ քա-ղել [متاع էն] :

استمداد իսթիմտատ [ա] Օգնութիւն խնդրել [مدد էն] :

استمرار իսթիմրար [ա] Շարունակու-թիւն [مرور էն] ی — . ـيـ — շարունակական :

استمزاج իսթիմզաճ [ա] Մէկումը կարծիքը կամ միտումը հետա-զօտել [مزاج էն] :

استمساك իսթիմսաք [ա] 1. Բռնել. [مسك էն] 2 Ժուժկալել :

استمطار իսթիմթար [ա] Անձրեւ խնդ-րել [مطر էն] :

استمك իսթիմէք [թ] Ուզել :

استملاء իսթիմլա [ա] Տուն տալ :

استملاك իսթիմլաք [ա] 1. Տիրանալ, տեղ առնել [ملك էն] 2. Կա-ռավարութեան ու է կալ-ուած մը որոշեալ գինը վը-ճարելով իւրացնելը :

استمناء իսթիմնա [ա] Գիջագործու-թիւն, ձեռնականութիւն [مني էն] :

استمهال իսթիմհալ [ա] Ժամանա-կամիջոց խնդրել [مهلت էն] :

استناد իսթինատ [ա] Ապաւինիլ, յենուլ [سند էն] — ما به ال մա-պիհիլ իսթինատ ապաւէն, յե-նարան. ا — յենլով :

استنادكاه իսթինատկեահ [պ] Յենա-րան :

استناره իսթինարէ* [ա] Լոյս խնդ-րել, առնել [نور էն] :

استنباء իսթինպա [ա] Լուր ուզել, հարցնել [نبا էն]։

استنباط իսթինպաթ [ա] Իմաստ մը հանել, եզրակացնել։

استنتاج իսթինթաճ [ա] Հետեւութիւն հանել, եզրակացնել [نتيجه էն]։

استنساب իսթինսապ [ա] Մէկու մը հետ ազգականութիւն ունենալ կեղծել [نسبت نسب էն]։

استنساخ իսթինսախ [ա] Ընդօրինակել [نسخه էն]։

استنشاد իսթինշատ [ա] Մէկէ մը ոտանաւոր շինելը կամ արտասանելը ուզել։

استنصاح իսթինսահ [ա] Խրատ ուզել [نصيحت էն]։

استنصار իսթինսար [ա] Օգնութիւն խնդրել [نصرت էն]։

استنطاق իսթինթաք [ա] 1. Հարցաքննել. 2. Հարցաքննութիւն [յոգ. استنطاقات]։ — نامه Հարցաքննութեան գիր. ـى — Հարցաքննական։

استنفار իսթինֆար [ա] Խորշիլ [نفرت էն]։

استنكاف իսթինքեաֆ [ա] Ետ կենալ։

استواء իսթիվա [ա] 1. Հաւասարութիւն. 2. Մակարդակ։ خط — Հասարակած։

أستوار ուսթուվար [պ] Հաստատուն, ամուր։

استوانه ուսթուվանէ [պ] տե՛ս اسطوانى և اسطوانه ։

استويج ուսթուվիճ [թ] Սղխա-կադեղ։

استوپو ուսթուփփո [եւր.] Խծուծ։

استهانه իսթիհանէ* [ա] Ծաղրելի համարել [هين էն]։

استهجان իսթիհճան [ա] Թերի կամ ամօթալից համարել [هجنت էն]։

استهداء իսթիհտա [ա] Ուղիղ ճանապարհ խնդրել [هدايت էն]։

استهداف իսթիհտաֆ [ա] Նշաւակ ըլլալ [هدف էն]։

استهزاء իսթիհզա [ա] Ծաղրել, ծաղր։ كار — ծաղրող. كارانه — ծաղրական։

استهلاك իսթիհլաք [ա] Վատնել [هلاك էն]։

استهلال իսթիհլալ [ա] 1. Մահիկը տեսնելով պօռալ [هلال էն] 2. Նորածին մանկան պօռալը։

استهواء իսթիհվա [ա] 1. Յօժարիլ [هوى էն] 2. բժշ. Մարմնոյն մէկ կողմը օդ կամ կազ հաւաքուիլը [هواء էն]։

استيجاب իսթիճապ [ա] Տրամադրել, պատճառել [وجوب էն]։

استيجار իսթիճար [ա] Վարձել [اجرت էն]։

استيداع իսթիտա' [ա] Աւանդ ուզել [وديعه էն]։

استيذان իսթիզան [ա] Արտօնութիւն խնդրել, առնել [اذن է։

استيصال իսթիսալ [ա] Խլել, բնաջինջ ընել [اصل էն]։

استيضاح իսթիզահ [ա] Բացատրութիւն խնդրել [ايضاح. وضوح էն] 2. Հարց [յոգ. ات —]։

استيعاب իսթի'ապ [ա] Պարունակել. բովանդակել [وعا էն]։

استيف իսթիֆ [է] 1. Խիտ սախիտ կուտելը. 2. Կայունութիւն։

استيفاء իսթիֆա [ա] Գանձել, առնուլ [ايفا . وفا էն]։

استيقان իսթիգան [ա] Ստոյգ գիտնալ [يقين էն]։

استيلاء իսթիլա [ա] Տիրել, գրաւել [ولى . ولايت էն]։

استيم ըսթիմ [անգ.] Շոգի։

استيارەجى իսթիմարաճը [թ] Աղրանք գնահատող։

استيمان իսթիման [ա] Պաշտպանութիւն խնդրել, անձնատուր ըլլալ [امن էն]։

آستين աստին [պ] Թեզանիք։

استيناس իսթինաս [ա] 1. Ընտելանալ [انسيت էն] 2. Վարժութիւն։ — مكارم շնորհասաւորք։

استيناف իսթինաֆ [ա] 1. Վերաքննութիւն. 2. Վերաքննութեան դիմել։

استينافاً իսթինաֆէն [ա] Վերաքննութեամբ։

استينافيه իսթինաֆիյէ* [ա] Վերաքննիչ, վերաքննական։

استيهاب իսթիհապ [ա] Նուէր առնել [هبه էն]։

استيهال իսթիհալ [ա] Արժանաւորութիւն [اهليت էն]։

اسجاع իսճա՛* [ա] Նոյնայանգութիւնք [سجع էն]։

اسحار էսհար* [ա] 1. Արշալոյսք [եզ. سحر սեհէր] 2. Դիւթութիւնք [եզ. سحر սիհր]։

اسقاط իսգաթ [ա] Բարկացնել։

اسغان իսղան [ա] Տաքցնել։

اسخى էսխա [ա] Աւելի կամ ամենառատաձեռն [سخى . سخاوت էն]։

اسخياء էսխիյա* [ա] Առատաձեռն մարդիկ [եզ. سخى]։

اسد էսէտ [ա] Առիւծ [յգ. آساد] اسد الله — Ալի՝ փեսայ Մուհամմէտի։

اسداد էստատ* [ա] Պատուարք [եզ. سد]։

اسر էսր [ա] Գերութիւն։

اسر էսր [ա] Էշըրա. Ընկեցում։

اسراء իսրա [ա] Ղրկել [اسرايت էն]։

اسراء էսարա* [ա] Գերիներ [եզ. اسير]։

اسرائيل իսրայիլ [ա] Իսրայէլ։

اسرار էսրար* [ա] 1. Գաղտնիքներ [եզ. سر] 2. Իսրար. Ծածկել։

اسرار իսրար [թ] Հաշիշ [— كش] Հաշիշ խմող։

اسراع իսրա՛ [ա] Փութացնել, փութալ [سرعت էն]։

اسراف իսրաֆ [ա] 1. Շռայլել, մսխել 2. Շռայլութիւն [յգ. اسرافات]։

اسرافجى իսրաֆճը [թ] Շռայլ, մսխող։

اسرافيل իսրաֆիլ [ա] Հրեշտակապետ մ՚է որ յարութեան փողը պիտի հնչէ։

اسرب էսրէպ [ա] Կապար. ى — կապարագոյն։

اسرع էսրա՛ [ա] Աւելի կամ ամենաարագ [سريع էն]։

اسرکلی էսէրկէլի [թ] Դիւրագրգիռ, այլանդակ ։

اسرکمک էսիրկէմէք [թ] 1. Պահպանել 2. Խնայել ։

اسره էսրէ [թ] Նշան մ'է որ է կամ ը ձայնը կուտայ ։

اسره էսիրրէ* [ա] Գահեր [եզ. سرر] ։

اسس ուսուս* [ա] Հիմունք [եզ. اساس] ։

اسطار իսթար [ա] 1. Գրել [سطر էն] 2. էսթար.* Գծեր [եզ. سطر]։

اسطرلاب ուսթուրլապ յու. Աստեղաց բարձրութիւնը չափելու գործիք ։

اسطقس ուսթուքուսս [ա] Տարր [յգ. اسطقسات] ։

اسطوانه ուսթուվանէ* [ա] Գլան ։

اسطوانی ուսթուվանի [ա] Երկրա. Գլանային ։

اسطوره ուսթուրէ* [ա] Վէպ [յգ. اساطیر] ։

اسعاد իսաատ [ա] Երջանկացնել [سعادت էն] ։

اسعار էսաար* [ա] Ընթացիկ գիներ։

اسعاف իսաաֆ [ա] Խնդիրքը կատարել. առաջ. — قرن կամ — رهین կատարուած ։

اسعد էսաատ [ա] Աւելի կամ ամենաերջանիկ, երանելի [سعید էն] ։

اسف էսէֆ [ա] Վիշտ, ցաւ ։

اسفا էսէֆա [ա] Եղո՜ւկ, վա՜յ ։

اسفار էսֆար* [ա] 1. Ճամբորդութիւնք, արշաւանք [եզ. سفر սէֆէր] 2. Մատեանք [եզ. سفر սիֆր] ։

اسفاناج իսփանախ [պ] Ճոմին ։

اسفل էսֆէլ [ա] 1. Աւելի կամ ամենաստորին [էգ. سفلی] [յգ. اسافل] 2. Սրլան ։ سافلین — դժոխք. ամենաչուառ ։

اسفیداج իսֆիտաճ [պ] Սպիտակագեղ ։

اسقاء իսքա [ա] Ջրվացնել, ջըրել [سقایت էն] ։

اسقارموز ըսքարմոզ [յ] Փոքր ցիցք որոց վրայ առ կախ կը հաստատուին թիերն ։

اسقاط իսքաթ [ա] 1. Ձգել [سقوط էն] 2. Ջնջել 3. Զըրկել ։ առաջ. جنین — վիժում պատճառել ։

اسقام իսքամ [ա] 1. Ախտացընել [سقامت էն] 2. էսքամ* Ախտեր ։

اسقانبیل ըսքանպիլ [թ] Տեսակ մը թղթախաղ ։

اسقره ըսքարա [թ] 1. Կասկարայ 2. Կասկարայի վրայ եփուած ։

اسقف ուսքուֆ [ա] Եպիսկոպոս ։

اسقندیل ըսքանտիլ [իտ] Խորաչափ ։

اسقوربوط ըսքորպութ [իտ] Լըն-դադարութիւն ։

اسقوفیه ըսքուֆիէ [յու] Գիշերային գլխարկ ։

اسقونطو ըսքոնթօ [իտ] Զեղչ ։

اسکات իսքեաթ [ա] Լռեցնել, համոզել [سکوت էն] ։

اسکان իսքեան [ա] 1. Բնակեցը-

[եզ. سن] 2. Տարիքներ 3. Չինուորական ծառայութեան սահմանեալ տարիքներ՝ որք են 20 է մինչ 40 4. Խնան ակռայներու բուսնիլը ։

اسنك էսնէք [թ] Առաձիգ ։

اسنلشمك էսնէնլէշմէք [թ] Իրարու հրաժեշտի ազդըյն տալ ։

اسنمك էսնէմէք [թ] 1. Յօրանջել 2. Առաձգել ։

اسنه էսինէ* [ա] Նիզակներ [եզ. سنان] ։

اسوار էսվար* [ա] Պարիսպներ [եզ. سور սուր] ։

اسواق էսվագ* [ա] Շուկայներ [եզ. سوق] ։

اسوج Իսվէչ [թ] Շուէտ ։

اسود էսվէտ [ա] Սեւ [سواد էն] ։

اسوداد իսվիտատ [ա] Սեւնալ [سواد էն] ։

آسودكی Ասուտէկի [պ] Անդորրութիւն ։

آسوده Ասուտէ [պ] Անդորր, խաղաղ ։ حال — խաղաղ ։

اسوه Ուսվէ* [ա] 1. Ուղի 2. Հետեւելի, օրինակելի անձ ։

اسوچره Իսվիչրէ [թ] Զուիցերիա ։

اسهال իսհալ [ա] Փորհարութիւն [سهل էն] ։

اسهام էսհամ* [ա] Բաժինք [եզ. سهم] 2. Արժեթուղթք ։ — عومیه գօնսօլիտէ ։

اسهل էսհէլ [ա] Աւելի կամ ամենադիւրին [سهولت . سهل է] ։

آسیا Ասիա [ա] Ասիա ։

آسیاب Ասիապ [պ] Ջաղացք, աղօրիք ։

آسیاباد ասիապատ [պ] Հողմաղաց ։

آسیابان Ասիապան [պ] Ջաղացպան ։

اسیاف էսեաֆ* [ա] Թուրեր [եզ. سیف] ։

آسیب Ասիպ [պ] Արկած ։

اسیر էսիր [ա] Գերի [յգ. اسرا] ։ آلهجه — գերառութիւն ։ — فراش او անկողնոյ ծառայել ։

اسیركمك էսիրկէմէք [թ] տե՛ս اسركمك

اسیل էսիլ [ա] Ուղիղ ։

اش էշ [թ] Ընկեր, նման ։ տառց. ی — دول քող նորածին մանկան ։

آش Աշ [թ] Կերակուր ։

اشارات իշարաթ* [ա] 1. Նշաններ [եզ. اشارت] 2. Ցանօթութիւնք ։

اشارت իշարէթ* [ա] 1. Ցոյց տալ 2. Նշան [յգ. اشارات] 3. Ցանօթութիւն 4. Նշանակել 5. Հրաման, անօրինութիւն ։ — اسم ցուցական ածական կամ դերանուն ։

اشاعت իշա՛աթ* } [ա] Տարածել, տարածայնել [شیوع էն] ։
اشاعه իշա՛ա* }

آشاغی աշաղը [թ] 1. Վար 2. Ստորին, կոշտ ։

آشام Աշամ [պ] Խմող ։

اشباح էշպահ* [ա] Մարմիններ ։

اشباع իշպա՛ [ա] 1. Կշտացնել 2. փիլ. Յագեցութիւն ։

اشباه էշպահ* [ա] Նմանք [եզ. شبیه] ։

اشبو իշպու [թ] Ահա այս, ներկայ ։

اشراف եշրաֆ* [ա] 1. Ազնուականք [եզ. شريف] 2. Մահմետէ սերեալք :

اشراق իշրաք [ա] 1. Ծագիլ [شرق էն] 2. Լուսաւորել 3. Լուսափայլիլ :

اشراك իշրակ [ա] 1. Ընկերացընել [شركت էն] 2. Բազմաստուածութիւն :

اشربه եշրիպէ* [ա] Ըմպելիներ [եզ. شراب] :

اشرعه եշրի'ա* [ա] Առագաստք [եզ. شراع] :

اشرف եշրէֆ [ա] Աւելի կամ ամենա-փառաւոր, ազնիւ [شرف شريف էն] :

اشنه եշնէ [թ] Խառնք անասնոց :

اشعار եշ'ար* [ա] 1. Ոտանաւորք [եզ. شعر շի'ր] 2. Հերք [եզ. شعر շա'ր] :

اشعار իշ'ար [ա] 1. Յայտնել, ծանուցանել 2. Զեկոյց, տեղեկութիւն [յկ. اشعارت] :

اشعاع իշ'ա' [ա] Ճառագայթումն [شعاع էն] :

اشعال իշ'ալ [ա] Բորբոքեցնել, վառել [شعله էն] :

اشعه եշի''ա* [ա] Ճառագայթք [եզ. شعاع] :

اشغال եշղալ* [ա] Զբաղումներ, գործեր [եզ. شغل] : — ترك գործադուլ :

اشغال իշղալ [ա] 1. Զբաղեցնել [شغل էն] 2. զին. Առժամեայ գրաւում :

اشفاء իշֆա [ա] Բժշկել [شفا էն] :

اشفاق եշֆաք* [ա] 1. Ողորմածութիւնք, կարեկցութիւնք [եզ. شفقت] 2. Արշալոյսք [եզ. شفق] :

اشفاق իշֆաք [ա] Ողորմիլ, գթալ [شفقت էն] :

آشفتكى աշուֆթէկի [պ] Մոլեգին սիրահարութիւն :

آشفته աշուֆթէ [պ] 1. Մոլեգին սիրահար [յկ. آشفتكان] 2. Բող :

اشفق եշֆաք [ա] Ամենագթած [شفيق . شفقت էն] :

اشقياء եշգիյա* [ա] Ապստամբք, յելուզակք, աւազակք [եզ. شقى] :

آشقين աշգին [թ] Անդին անցած :

اشك եշկ [պ] Արտասուք :

اشك էշէկ [թ] Էշ : ասաց. — شقه سى ձեռաց կասսակ :

آشكار աշկեար } [պ]<br>
آشكاره աշկեարէ } [պ] Ակներև :

اشكال եշկեալ* [ա] 1. Ձևեր, [եզ. شكل] 2. երկ. Ձևուեր, պատկերներ 3. Կերպարանք :

اشكال իշկեալ [ա] 1. Դժուարացընել 2. Դժուարութիւն :

اشكبار եշկպար [պ] Արտասուալող :

اشكجى էշէկճի [թ] Իշապան :

اشكريز եշկրիզ [պ] Արտասուալող :

اشكلنمك էշկելէնմէկ [թ] Տմարդանալ :

اشكنبه իշկէնպէ [պ] Քաղիրթ :

اشكنجه իշկէնճէ [պ] Տանջանք, նեղութիւն :

اشكوه էուշքեօհ [պ] Մեծվայելչութիւն ։

اشكيل էշքէլ [թ] Տարակոյս, կասկած ։

اشكين էշքին [թ] 1. Միակողմանի գնացք 1. Միակողմանի գնացող (ձի)։

آشلامق աշլամաք [թ] տե՛ս [ آشيلامق ]։

اشلشمك էշլիշմէք [թ] Զուգել ։

اشمئزاز իշմիզազ [ա] Գարշիլ, սրտնեղիլ, երկնչիլ ։

اشمار էշմար [թ] Նշան ։

اشمام իշմամ [ա] 1. Հոտոտել տալ [شم էն] 2. Զգացնել ։

آشمق աշմաք [թ] 1. Անդրին անցնիլ 2. Սատակի վրայ ելնել ։

اشمل էշմէլ [ա] Աւելի բովանդակող [شامل էն] ։

اشمك էշմէք [թ] 1. Փորել 2. Վարել ։ — مزار գերեզման կողոպտել ։

آشنا աշնա [պ] 1. Ծանօթ, բարեկամ 2. Տ ե ղ ե ա կ [յգ. آشنايان] ։

آشنالق աշնալըք [թ] 1. Ծանօթութիւն 2. Բարեւում ։

آشنايان աշնայան [պ] Ծանօթք ։

اشنع էշնա' [ա] Յոռեգոյն [شنيع է]։

آشنق աշընմաք [թ] Մաշիլ ։

اشنمك էշինմէք [թ] Փորել ։

اشنه էօշնէ [պ] Մամուռ ։

اشواق էշվաք* [ա] 1. Փափագներ, տենչեր, իղձեր [եզ. شوق] 2. Հաճոյքներ ։

اشواك էշվաք [ա] Փուշեր [եզ. شوك] ։

آشوب աշուպ [պ] 1. Խառնակութիւն 2. Խռովող ։

آشورمق աշուրմաք [թ] 1. Անցնել 2. Գողնալ 3. Փախցնել, տանիլ ։

آشوری աշուրը [թ] Չափազանց ։ առաջ. — كون օր ընդ մէջ. — طاغ լեռան անդին կողմը ։

اشهاد իշհատ* [ա] Վկայք [եզ. شاهد] ։

اشهاد իշհատ [ա] 1. Վկայ ընել, վկայ կոչել [شهادت էն] 2. Ծանուցանել ։

اشهار իշհար [ա] Հռչակաւոր ընել [شهرت էն] ։

اشهر էշհէր [ա] Աւելի կամ ամենանշանաւոր, ծանօթ [شهرت • شهير էն] آثار — գլուխ գործոց ։

اشهر էշհուր [ա] Ամիսներ [եզ. شهر] ։

اشهل էշհէլ [ա] Կապոյտ ։

اشيلمك էշիլինմէք [թ] Փորել, պեղել ։

آشى աշը [թ] 1. Պատուաստի հիւթ 2. Պատուաստ ։

اشياء էշյա* [ա] 1. Իրեր, նիւթեր [եզ. شیء] 2. Կարասիք, գոյք 3. Վաճառքներ ։

آشيان աշյան [պ] Բոյն ։ — فردوس դրախտաբնակ ։

آشيانه աշյանէ [պ] Բոյն ։

آشيرمق աշըրմաք [թ] տ. آشورمق ։

اشيرى աշըրը [թ] տ. آشورى ։

آشيق աշըք [թ] Վէգ ։

اشيك էշիք [թ] Սեամ, սեմ ։

آشيلامق աշըլամաք [թ] Պատուաստել ։

اصوات **ասվաթ*** [ա] Ձայներ [եզ. صوت] ։

اصوب **ասվեպ** [ա] Աւելի կամ ամենաուղիղ, բարեդեպ [صواب էն] ։

اصول **ուսուլ*** [ա] **1.** Արմատք, հիմունք [եզ. اصل] **2.** Եղանակ **3.** Դրութիւն, օրէնք **4.** Կամաց, մեղմ ։ տաց. — دفتری տոմարակալութիւն — وفروع Ծնողք և զաւակունք. Հաւք և թոռունք ։ ی دارهسنده — օրինաց համաձայն.

اصولیون **ուսուլիյուն** [ա] Կանոնականք, իրաւաբանք ։

اصی **ասի** [ի] **1.** Տաքութիւն **2.** Տաք ։

اصیاف **էսյաֆ*** [ա] Ամառներ ։

اصیل **ասիլ** [ա] **1.** Ազնուական [اصالت էն] **2.** Եբաա. Բուն, որ չէ երաշխաւոր կամ փոխանորդ ։

اصیلانه **ասիլանէ** [պ] Ազնուական ։

اصیلزاده **ասիլզադէ** [պ] Ազնուական [յոգ. اصیلزادکان] ։

آصیلو **ասըլը** [ի] Կախուած ։

اضائت } **իզաէթ*** [ա] Լուսաւորել ։
اضائه } **իզաէ*** [ضیا էն] ։

اضاعت } **իզաաթ*** [ա] **1.** Կորսնցնել
اضاعه } **իզաա*** [ضیاع էն] **2.** Վատնել ։

اضافت **իզաֆէթ*** [ա] **1.** Կցել, յօդել [ضیافت էն] **2.** Քեր. Կապակցութիւն (յատկացուցիչ յատկացեալի) ։ لامیه — ստացում կամ վերաբերութիւն ցուցնող կապակցութիւն ։

اضافه **իզաֆէ*** [ա] Կցել, յօդել [ضیافت էն] ։

اضافیه **իզաֆիյէ*** [ա] Յարաբերական ։ տաց. ثلث ٥ — տեսակարար ծանրութիւն ։

اضحا } **ազհա*** [ա] Զոհեր ։ — عید տօն զոհա-
اضحی } կերաց (զուրպան պայրամը) ։

اضحوکه **ուզհուքէ*** [ա] Ծիծաղաշարժ բան [յոգ. اضاحیك] پرداز— միմոս, ծաղրածու ։

اضداد **ազդադ*** [ա] **1.** Հակառակք [եզ. ضد] **2.** Հակառակորդք. — جمع քասս ։

اضرار **իզրար** [ա] Վնաս հասցնել, վնասել [ضرر էն] ։

اضطراب **իզթիրապ** [ա] Տառապանք, յոյզ, մտատանջութիւն, ցաւ [ضرب էն] [յոգ. اضطرابات] ։

اضطرار **իզթիրար** [ա] **1.** Ստիպողականութիւն [ضرورت էն] **2.** Սաստիկ պէտք, չքաւորութիւն **3.** Ակամայութիւն ։ ی — ակամայ ։

اضعاف **ազ'աֆ*** [ա] Բազմապատիկք ։

اضعاف **իզ'աֆ** [ա] **1.** Տկարացնել [ضعف էն] **2.** Կրկնապատկել ։

اضعف **ազ'աֆ** [ա] Աւելի կամ ամենատկար [ضعیف էն] ։

اضلاع **ազլա'*** [ա] Կողք [եզ. ضلع] — مجموع շրջապատ ։

اضلال **իզլալ** [ա] Մոլորեցնել [ضلالت էն] ։

اضمار **իզմար** [ա] Արտին մէջ պահել, ծածկել [ضمیر էն] ։

կութիւն, դիտողութիւն [յգ. اعتراضات] ։ ـــــ على الحكم . ատեա . ի բացակայութեան տրուած վճռոյն դէմ բողոքել . الغير ـــــ երրորդի մը կողմանէ բողոք ։

اعتراضيه է'թիրազիյէ* [ա] Հատուածողական ։ — جمله միջանկեալ նախադասութիւն ։

اعتراف է'թիրաֆ [ա] Ճանչնալ, խոստովանիլ [عرفان էն] ։

اعتزاز է'թիզազ [ա] Մեծութիւն, փառք և պատիւ [عزت էն] ։

اعتزال է'թիզալ [ա] 1. Բաժնուիլ [عزل էն] 2. Հերձուածողութիւն ։

اعتزام է'թիզամ [ա] 1. Երթալ [عزيمت էն] 2. Դիտում ։

اعتساف է'թիսաֆ [ա] Անիրաւութիւն, կեղեքում [յգ. اعتسافات] ։

اعتصاب է'թիսապ [ա] Բժշ. Ջղաւորում ։

اعتصام է'թիսամ [ա] 1. Փաթթուիլ [عصمت էն] 2. Հեռու կենալ ։

اعتقاد է'թիքատ [ա] 1. Հաւատալ [عقد էն] 2. Հաւատք [յգ. اعتقادات] ։ ـــات باطله — աւելորդապաշտութիւնք ։

اعتكاف է'թիքեաֆ [ա] 1. Տեղ մը քաշուիլ, առանձնանալ 2. Ճգնիլ ։

اعتلاء է'թիլա [ա] Վերանալ, բարձրանալ [علو էն] ։

اعتماد է'թիմատ [ա] Վստահիլ, վստահութիւն [عمد էն] ։ اً — վստահելի ։

اعتمادنامه էթիմատնամէ [պ] Յանձնարարագիր, պաշտօնագիր ։

اعتنا է'թինա [ա] Մեծ խնամք տանիլ, լաւ ուշադրութիւն [عنايت էն] ։

اعتياد էթիյատ [ա] Սովորիլ [عادت էն] ։

اعتياض է'թիյազ [ա] Փոխարէն առնուլ [عوض էն] ։

اعجاب է'ճապ [ա] Զարմացնել [عجب էն] ։

اعجاز է'ճազ [ա] 1. Անկարողացնել [عجز էն] 2. Սքանչացնել 3. Սքանչելիք ։

اعجازكار էճազքեար [պ] Սքանչելիք արտադրող ։ انه — ى — սքանչելական, սքանչելագործ ։

اعجام ա'ճեամ* [ա] Պարսիկք [եզ. عجم] ։

اعجز ա'ճեզ [ա] Աւելի կամ ամենատկար [عاجز էն] ։

اعجوبه ու'ճուպէ* [ա] Զարմանալի բան կամ դէպք [յգ. اعاجيب] ։

اعدا ա'տա [ա] Ամենաթշնամի ։

اعداء ա'տա* [յ] Թշնամիք [եզ. عدو] ։

اعداد է'տատ [ա] 1. Պատրաստել [عده էն] 2. ա'տատ* Թիւեր [եզ. عدد] ։

اعدادى է'տատի [ա] Նախապատրաստական ։

اعدام է'տամ [ա] Մեռցնել, մահ [عدم էն] ։

اعذار ա'զար* [ա] Չքմեղանք,

պատճառաբանութիւնք [եղ. عذر] ։

اعراب ա'րապ* [ա] 1. Անապատական արաբք [եղ. اعرابی] 2. Ի'րապ փոփոխումն անուանց և բայից. Հոլովումն ։

اعرابی ա'րապի [ա] Անապատական արաբ ։

اعراض ա'րազ* [ա] 1. Լայնութիւնք [եղ. عرض] 2. Պատահական հանգամանքներ ։

اعراض ը'րազ [ա] Երես դարձնել ։

اعراف ա'րաֆ [ա] Քաւարան ։

اعرج ա'րէճ [ա] Կաղ ։

اعرجیت ա'րէճիյէթ* [ա] Կաղութիւն ։

اعرف ա,րէֆ [ա] Աւելի կամ ամենագիտուն [عارف են] ։

اعز է'ազզ [ա] Աւելի կամ ամենայարգի, թանկագին [عزیز են] ։

اعزاز ի'զազ [ա] Մեծացուցանել, յարգել, մեծարանք [عزت են] ։

اعزه ե'իզզէ* [ա] Սուրբք, երանելիք [عزیز են] ։

اعسار ի'սար [ա] Աղքատութիւն [عسرت են] ։

اعشاب աշապ* [ա] Խոտեր [եղ. عشب] ։

اعشار ա'շար* [ա] Տասանորդք [եղ. عشر] ی — տասանորդական ։

اعصاب ա'սապ* [ա] Ջղեր [եղ. عصب] ی — ջղային ։

اعصار ա'սար* [ա] Դարեր [եղ. عصر] ։

اعضاء ա'զա* [ա] 1. Անդամք [եղ. عضو] 2. Անդամ 3. Գործարանք (մարմնոյ) ։

اعضاد ա'զատ* [ա] Բազուկներ [եղ. عضد] ։

اعضالق ա'զալըգ [թ] Անդամակցութիւն ։

اعطاء ի'թա [ա] Տալ [عطا են] ։

اعطاف ա'թաֆ* [ա] Կարեկցութիւնք, շնորհք [եղ. عطف] ։

اعظام ի'զամ [ա] Մեծցնել, չափազանցել [عظمت են] ։

اعظم ա'զամ [ա] Աւելի կամ ամենամեծ, գլխաւոր [عظیم է] [էգ. عظمی] ։ صدر — կամ وزیر — մեծ Եպարքոս ։

اعظمیت ա'զամիյէթ* [ա] Մեծագունութիւն ։

اعقاب ա'գապ* [ա] Սերունդք, յաջորդք [եղ. عقب] ։

اعقل ա'գըլ [ա] Աւելի կամ ամենախելացի [عاقل են] ։

اعلا ա'լա [ա] 1. Աւելի կամ ամենաբարձր [علی են] 2. Լաւագոյն 3. Վերին 4. Բարի, լաւ ։ — قریب լաւագոյն. քաջ. — علی ال քաջալաւ ։

اعلاء ի'լա [ա] Բարձրացնել [علو են] ։ كلة الله — Աստուծոյ բանը քարոզել ։

اعلال ի'լալ [ա] ی و ا և ։ տառերն փոփոխել բաղդրաձայնութեան համար [علت են] ։

اعلام ա'լամ* [ա] 1. Դրօշակք

[եղ. علم] 2. Յատուկ ա-նուններ 3. Գիտնականք [եղ. عليم] :

اعلام Էʻլամ [–] Ծանուցանել [علم էն] 2. Տեղեկագիր [յգ. اعلامات] 3. Վճռագիր :

اعلان Էʻլան [–] Յայտարարել, ազդարարել, ազդ [علن էն] [յգ. اعلانات] :

اعلاننامه Էʻլաննամէ [ս] Յայտա-րարութիւն, ազդ :

اعلم աʻլէմ [–] Ամենագէտ [عالم էն] : — الله Աստուած գիտէ. կարծեմ. իցէ թէ :

اعلى աʻլա [–] տե՛ս اعلا :

اعم Էʻամմ [–] Աւելի կամ ամե-նա-հասարակաց, ընդհանուր [عام էն] :

اعما աʻմա [–] Կոյր [عميا էն] :

اعماء Էʻմա [–] Կուրացնել [عميا էէ] :

اعمار Էʻմար [–] 1. Շէնցնել, մը-շակել [عمران էն] 2. աʻմար* կեանքեր [եղ. عمر] :

اعمال աʻմալ* [–] Գործք [եղ. عمل] : اربعه — Թուա. չորս գործո-ղութիւնք :

اعمال Էʻմալ [–] 1. Շինել, ընել, շինութիւն [عمل էն] 2. Գոր-ծածել : ذهن — . فكر — մտա-ծել, խոկալ :

اعمالات Էʻմալաթ* [–] Շինութիւնք, շինուածք : خانه — գործարան :

اعمام աʻմամ* [–] Հօրեղբարք :

اعمده աʻմիտէ* [–] 1. Սիւներ [եղ. عمود] 2. Ցենարանք :

اعمى աʻմա [–] տե՛ս اعما :

اعناب աʻնապ* [–] Խաղողք [եղ. عنب] :

اعناق աʻնագ* [–] Վիզեր [եղ. عنق] :

اعنى به աʻնիղինի [–] Այսինքն, այսու ըսել կուզեմ :

اعوام աʻվամ* [–] Տարիներ [եղ. عام] :

اعوان աʻվան* [–] Ձեռնտուք :

اعوج աʻվէճ [–] Ծուռ, կամա-կոր :

اعوجاج Էʻվիճաճ [–] Ծռութիւն, կամակորութիւն :

اعور աʻվէր [–] 1. Միականի 2. Բժշ. Կուրաղի :

اعياد աʻյատ* [–] Տօն օրեր [եղ. عيد] :

اعيان աʻյան* [–] 1. Աչքեր [եղ. عين] 2. Երեւելիք 3. Աւա-գանիք : مجلس — ծերակոյտ :

اعين աʻյուն [–] Աչքեր [եղ. عين] :

آغ աղ [ի] 1. Ուռկան 2. Ճեր-մակ : اورجك — ى սարդի ոս-տայն :

آغا աղա [ի] 1. Տէր 2. Աղա 3. Վերակացու 4. Սպասաւոր մեծամեծաց : զօր. طابور —سى հազարապետ պաշտակ զօրաց . قپو — سى . ايچ — سى մանկը-լաւիկ :

اغاثه Էղասէ* [–] Օգնութեան գալ :

آغاج աղաճ [ի] 1. Ծառ 2. Ա-տաղձ 3. Գերան 4. Փայտ-եայ : لق — ծառաստան . قاقان — փայտփոր :

آغارتمق աղարթմագ [թ] Ճերմկցը-նել ։ — یوز պատիւ բերել ։

آغارمق աղարմագ [թ] 1. Ճերմըկ-նալ 2. Լուսնալ ։ — كوز կու-րանալ ։

آغاز աղազ
اغازه աղազէ } [պ] Սկիզբ ։

آغالق աղալըգ [թ] 1. Տէրութիւն 2. Աղայութիւն 3. Վերա-կացութիւն ։

اغاليط էղալիթ* [ա] Սխալեցու-ցիչ խնդիրք [եզ. اغلوطه] ։

اغانى էղանի* [ա] 1. Երգեցողու-թիւնք [եզ. اغنيه] 2. Երգեր ։

اغبرار իղպիրար [ա] 1. Փոշիով ծածկուիլ [غبار էն] 2. Սըր-դողիլ ։ خاطر — սրդողիլ ։

اغبيا աղպիեա* [ա] Թանձրա-միտք [եզ. غبي] ։

اغتداء իղթիտա [ա] Սնանիլ [غدا է]

اغتراب իղթիրապ [ա] Պանդըխ-տութիւն [غربت էն] ։

اغترار իղթիրար [ա] Խրոխտանօք վստահիլ [غرور էն] ։

اغتسال իղթիսալ [ա] Լուացուիլ [غسل էն] ։

اغتشاش իղթիշաշ [ա] Շփոթու-թիւն, խառնակութիւն [غش էն] [յգ. اغتشاشات] ։

اغتصاب իղթիսապ [ա] Յափշտա-կել, կողոպտել [غصب էն] ։

اغتلال իղթիլալ [ա] Եփղ. Սաս-տիկ ծարաւութիւն ։

اغتنام իղթինամ [ա] Աւար ընել, յափշտակել [غنيمت էն] ։ فرصت ! — առիթ ձեռք ձգել ։

اغتياب իղթիեապ [ա] 1. Անե-րեւութանալ [غيب էն] 2. Բամբասել [غيبت էն] ։

اغداء իղտա [ա] Սնուցանել [غدا էն] ։

اغده աղտա [թ] Թանձրացուց-եալ շաքար ։

آغدەلمق աղտալամագ [թ] Թանձրա-ցընել ։

اغديه աղտիէ* [ա] Սնունդք [եզ. غدا] ։

آغر աղըր [թ] 1. Ծանր 2. Կա-մաց 3. Լուրջ 4. Ծանրա-գին 5. Մտայոյզ ։

ոտոյ. — قولاغى ծանրալուր —باشلو باش — լուրջ. — الله կամ — الى դանդաղ, ծանրահա-ւոյց ։

اغراء իղրա [ա] Գրգռել ։

اغراس իղրաս [ա] Տնկել [غرس է] ։

اغراض աղրազ* [ա] Վատ դի-տումներ, ոխեր [եզ. غرض] ։ — اصحاب շահախնդիրք ։

اغراق իղրագ [ա] 1. Ընկղմել [غرق էն] 2. Չափազանցու-թիւն [յգ. اغراقات] ։

اغرب աղրեպ [ա] Աւելի կամ ա-մենա-զարմանալի, օտարոտի [غريب էն] ։

اغربه աղրիպէ* [ա] Ագռաւներ [եզ. غراب] ։

اغرتمق աղրըթմագ [թ] Ցաւցնել ։

آغرشاق աղըրշագ [թ] 1. Բոլո-րակ մարմին 2. Մանոց ։

آغرلاشمق
اغرلشمق } աղըրլաշմագ [թ] 1. Ծանրանալ 2. Յա-մենալ ։

آغرلق աղըրլըգ [թ] 1. Ծանրութիւն 2. Թուլութիւն 3. Լրջութիւն 4. Բեռ 5. Օժիտ։
آغری աղըր [թ] Ցաւ ։
اغریمق աղըրմագ [թ] Ցաւիլ ։
آغز աղըզ [թ] 1. Բերան 2. Սայր 3. Գետաբերան 4. Անդամ ։
ասաց. — ایلك նախ, ի սկզբան. — بوزمق քաւուղի. — درت یولی լուտանք տեղալ. — ه آلمق յիշատակել. — ی کوشك անգաղտնապահ. — دن جواب բերանացի պատասխան. — ی آچق յապուշ կրթեալ. — ی چلیکلی Ճարտարախօս ։
اغزلامق } աղըզլանմագ [թ] Համտեսնալ ։
آغزلنمق }
آغزلق աղըզլըգ [թ] Բանիկ մը բերանը դրուած ո և է իր ։
آغستوس աղուստոս [յու.] Օգոստոս ։ بوجکی — Ճպուռն ։
اغشاء իղշա [ա] Ծածկել [غشا էն]։
آغشته աղեշթէ [պ] Շաղախեալ ։
اغشیه աղշիյէ* [ա] 1. Ծածկոցք [եզ. غشا] 2. Թաղանթք ։
اغصان աղսան* [ա] Ճիւղեր, ոստեր [եզ. غصن] ։
اغضاب իղզապ [ա] Զայրացնել [غضب էն] ։
اغفال իղֆալ [ա] 1. Խաբել [غفلت էն] ։ 2. Պատրանք, խաբէութիւն [յգ. اغفالات] ։
آغل աղըլ [թ] Փարախ ։ ասաց. آی — ی բակ լուսնի ։
اغلاء իղլա [ա] 1. Եռացընել [غلیان էն] 2. Սղեցնել ։
آغلاتمق աղլաթմագ [թ] Լացնել ։
اغلاشمق աղլաշմագ [թ] 1. Միատեղ ողբալ 2. Տրտնջալ ։
اغلاظ իղլազ [ա] Կոշտ զրուցել ։
اغلاق իղլագ [ա] 1. Գոցել 2. Խրթնաբանութիւն [յգ. اغلاقات] ։
اغلال աղլալ* [ա] Երկաթեայ անուրք ։
آغلامسامق աղլամսամագ [թ] Լալ ձեւացընել, փղձկիլ ։
آغلامق աղլամագ [թ] Լալ, ողբալ ։
اغلب աղլեպ [ա] 1. Ամենահզօր [غالب էն] 2. Մեծագոյն մաս ։ على الـ — ալէլ աղլեպ մեծաւ մասամբ ։
اغلوطه ուղլուտա* [ա] Մոլեցուցիչ, խնդիր, բան, առեղծուած [յգ. اغالیط] ։
اغماء իղմա [ա] Բժշ. Ուշագնացութիւն ։
اغماض իղմազ [ա] Աչք գոցել, անտես առնել [غمض էն] ։
آغمسی աղըմսը [թ] Սղխտականման ։
آغمق աղմագ [թ] Վերանալ, ելնել ։
اغناء իղնա [ա] 1. Հարստացընել [غنا էն] 2. Գոհացընել 3. Անկարօտ ընել ։
اغنام աղնամ* [ա] Ոչխարք [եզ. غنم] ։
اغنیاء աղնիյա* [ա] Հարուստք [եզ. غنی] ։
اغنیه ուղնիյէ* [ա] 1. Երգեցո-

